Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 13 ՀՈՒԼԻՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս 2—52—78:*





# ԱՎԵԼԻ ՇԱՏ ՍԻԼՈՍ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆԸ

Ագրոնոմ Գ. ԲԱԽՇԻՆՅԱՆ

*Անասունների մսուրային խնամքի ժամանակ կանաչ կերերին լիովին փոխարինում է սիլոսը, որի մեջ համարյա ամբողջությամբ պահպանվում են կանաչ կերերի բոլոր հատկությունները: Այս տեսակետից առանձնահատուկ տեղ է գրավում եգիպտացորենի սիլոսը:*

*Կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները, Հայաստանի կոլտնտեսությունները ընթացիկ տարում մեծ եռանդով ձեռնամուխ եղան եգիպտացորենի մշակությանը և, անցյալ տարվա համեմատությամբ, ավելի քան 15 անգամ ընդարձակեցին նրա ցանքատարածությունները: Եգիպտացորենը, որպես թանկարժեք կուլտուրա, միևնույն ժամանակ լուծում է երկու խնդիր՝ հացահատիկի ռեսուրսների համա-*

լրումը և լավ սիլոսի ստացումը եգիպտացո-
րենի ցողուններից։
Ընկեր Ն. Ս. Խրուշչևը ՍՄԿԿ Կենտկոմի
Հունվարյան պլենումում իր զեկուցման մեջ
հարուստ փաստերով ցույց տվեց, որ եգիպ-
տացորենից ամենաբարձր սննդարժեքը
ստացվում է այն ժամանակ, երբ բերքը հա-
վաքվում է բույսի կաթնամոմային հասու-
նացման վիճակում և կատարվում է կողրե-
րից անջատ սիլոսացում։
Եգիպտացորենի ցանքերից բարձր բերք
ստանալու համար պետք է հողը պահել փու-
խըր և մոլախոտերից ազատ վիճակում, ժա-
մանակին կատարել նոսրացման և ռռոգման
աշխատանքները, ջուրը ցանքերին տալ ըստ
պահանջի։ Մշակության ընթացքում եգիպ-
տացորենի ցանքերին պետք է տալ 1—2
սնուցում։

Այս տարի, անցյալ տարվա համեմատու-
թյամբ, կոլտնտեսություններում կերի սիլո-
սացումը աճելու է առնվազն 50 տոկոսով։
Միայն եգիպտացորենի կողրերը կաթնամո-
մային հասունության շրջանում սիլոսացնե-
լու համար կառուցվելու են 60.000 տոննա
տարողությամբ սիլոսային հորեր և սեկցիա-
ների բաժանված խրամատներ։
Սիլոսային կառուցվածքների շինարարու-



թյան կարիքների համար կոլտնտեսություն-
ներին պետությունը բաց է թողել մեծ քա-
նակությամբ շինանյութ, իսկ ՄՏ կայաննե-
րը նրանց տրամադրում են մեքենաներ։ Բա-
ցի այդ, ռեսպուբլիկայի արդյունաբերական
բազմաթիվ ձեռնարկություններ շեֆական
օգնություն են ցույց տալիս կոլտնտեսու-
թյուններին սիլոսային կառուցվածքների շի-
նարարության գործում։
Կոլտնտեսությունները պետք է օգտագոր-
ծեն իրենց բոլոր հնարավորությունները սի-
լոսային կառուցվածքների շինարարությունը
լրիվ և ժամանակին ավարտելու, ինչպես
նաև կերերի սիլոսացումը սեղմ ժամկետում
կատարելու համար։
Հատկապես մեծ ուշադրություն պետք է
դարձնել եգիպտացորենի կողրերը ժամանա-
կին հավաքելու և կոնցենտրատ սիլոս պատ-
րաստելու վրա։ Նախ պետք է հիշել, որ ե-
գիպտացորենի կողրերի կաթնամոմային
հասունության շրջանը տևում է 8-ից մինչև
12 օր։ Ուստի եգիպտացորենի կողրերը
պետք է հավաքել արագ, առանձին և նույն
օրը սիլոսացնել։ Սիլոսանյութը հորերի մեջ
լցնելու նպատակով պետք է առանձնացնել
հատուկ բրիգադա և փոխադրական միջոց-
ներ։ Կողրերն իրենց փաթեթային տերևնե-

րով պետք է մանրացնել սովորական սիլոսահատներով, համապատասխանորեն հարմարեցնելով նրանց կտրող մասը՝ կողրերը մանրացնելու համար։ Կողրերից որակյալ սիլոս ստանալու համար, այն պետք է լցնել լավ ցեմենտապատած, ջրի և օդի համար անթափանցիկ պատերով ու կլորացրած անկյուններով կառուցած խրամատների կամ կլոր հորերի մեջ։ Սիլոսի մասսան լցնելու սկզբից մինչև վերջը հարկավոր է անընդհատ տոփանել, որպեսզի սիլոսանյութի մեջ բոլորովին օդ չմնա, հակառակ դեպքում խմորումը կընթանա անբարեհաջող և սիլոսը կփչանա։ Մանրացված կողրերի վրա անմիջապես պետք է լցնել եգիպտացորենի ցողունների ու տերևների կտրատած մասսա 30—40 սմ. հաստությամբ, գմբեթաձև շերտով, որից հետո այդ գմբեթաձև շերտը ծածկել 10—15 սմ. խոնավացրած կավահողի և 25—35 սմ. հողի շերտով։ Սիլոսանյութը ձմեռը ցրտից և անձրևային ու ձյան ջրերից պաշտպանելու նպատակով սիլոսի հորը պետք է ունենա հատուկ ծածկոց։

Եգիպտացորենի սիլոսացված կողրերը իրենցից ներկայացնում են խտացրած կեր։ Այդ կերը հիմնականում տրվում է խոզերին և ընտանի թռչուններին։



Կողրերը հավաքելուց հետո, անմիջապես հարկավոր է հավաքել եգիպտացորենի ցողունները և սիլոսացնել աշտարակներում կամ սովորական խրամատներում։ Սիլոսացման աշխատանքները կատարել այն հաշվով, որ յուրաքանչյուր սեկցիան կամ ամբողջ կառուցվածքը լցվի մանրացված կողրերով 1—2 օրվա ընթացքում, իսկ կանաչ մասսայով՝ ոչ ավելի, քան 3 օրում։

Մի շարք շրջանների կոլտնտեսություններ սիլոսի համար այս տարի ցանել են նաև արևածաղիկ։ Արևածաղիկը պետք է հավաքել այն ժամանակ, երբ դաշտում բույսերի մեծամասնությունն արդեն ծաղկել են, առանց ուշացնելու սիլոսացնել այն այնպես, ինչպես սիլոսացվում է եգիպտացորենի կանաչ մասսան։ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում այս տարի առաջին անգամ աշխատում են 20 սիլոսային կոմբայններ, որոնք դաշտում սիլոսի կանաչ մասսան հնձում, մանրացնում և լցնում են ավտոմեքենայի մեջ։

ՍՍՌ Միության առաջավոր կոլտնտեսությունները և սովխոզները յուրաքանչյուր կովի համար տարեկան պատրաստում են 8—10 տոննա սիլոս։ Հայաստանի որոշ կոլտնտեսություններ 1954 թվականին յու-

րով պետք է մանրացնել սովորական սիլոսահատներով, համապատասխանորեն հարմարեցնելով նրանց կտրող մասը՝ կողրերը մանրացնելու համար։ Կողրերից որակյալ սիլոս ստանալու համար, այն պետք է լցնել լավ ցեմենտապատած, ջրի և օդի համար անթափանցիկ պատերով ու կլորացրած անկյուններով կառուցած խրամատների կամ կլոր հորերի մեջ։ Սիլոսի մասսան լցնելու սկզբից մինչև վերջը հարկավոր է անընդհատ տոփանել, որպեսզի սիլոսանյութի մեջ բոլորովին օդ չմնա, հակառակ դեպքում խմորումը կընթանա անբարեհաջող և սիլոսը կփչանա։ Մանրացված կողրերի վրա անմիջապես պետք է լցնել եգիպտացորենի ցողունների ու տերևների կտրատած մասսա 30—40 սմ. հաստությամբ, գմբեթաձև շերտով, որից հետո այդ գմբեթաձև շերտը ծածկել 10—15 սմ. խոնավացրած կավահողի և 25—35 սմ. հողի շերտով։ Սիլոսանյութը ձմեռը ցրտից և անձրևային ու ձյան ջրերից պաշտպանելու նպատակով սիլոսի հորը պետք է ունենա հատուկ ծածկոց։

Եգիպտացորենի սիլոսացված կողրերը իրենցից ներկայացնում են խտացրած կեր։ Այդ կերը հիմնականում տրվում է խոզերին և ընտանի թռչուններին։



Կողրերը հավաքելուց հետո, անմիջապես հարկավոր է հավաքել եգիպտացորենի ցողունները և սիլոսացնել աշտարակներում կամ սովորական խրամատներում։ Սիլոսացման աշխատանքները կատարել այն հաշվով, որ յուրաքանչյուր սեկցիան կամ ամբողջ կառուցվածքը լցվի մանրացված կողրերով 1—2 օրվա ընթացքում, իսկ կանաչ մասսայով՝ ոչ ավելի, քան 3 օրում։

Մի շարք շրջանների կոլտնտեսություններ սիլոսի համար այս տարի ցանել են նաև արևածաղիկ։ Արևածաղիկը պետք է հավաքել այն ժամանակ, երբ դաշտում բույսերի մեծամասնությունն արդեն ծաղկել են, առանց ուշացնելու սիլոսացնել այն այնպես, ինչպես սիլոսացվում է եգիպտացորենի կանաչ մասսան։ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում այս տարի առաջին անգամ աշխատում են 20 սիլոսային կոմբայններ, որոնք դաշտում սիլոսի կանաչ մասսան հնձում, մանրացնում և լցնում են ավտոմեքենայի մեջ։

ՍՍՌ Միության առաջավոր կոլտնտեսությունները և սովխոզները յուրաքանչյուր կովի համար տարեկան պատրաստում են 8—10 տոննա սիլոս։ Հայաստանի որոշ կոլտնտեսություններ 1954 թվականին յու-

յուրաքանչյուր կովի համար պատրաստեցին 5—6 տոննա և ավելի սիլոս, որը օգնեց կովերի կաթնատվության պլանների կատարմանը։ Ստեփանավանի շրջանի Սարչապետ գյուղի կոլտնտեսությունը մեկ կովի համար անցյալ տարի պատրաստել էր 6,8 տոննա սիլոս, Նորաշենի կոլտնտեսությունը՝ 6,2 տոննա։ Դա ապահովեց նշված կոլտնտեսություններում կովերի բարձր կաթնատվությունը։ Հունիսի 1-ի տվյալներով Սարչապետի կոլտնտեսությունում մեկ ֆուրաժային կովից ստացվել է 1.103,8 կգ. կաթ, իսկ Նորաշենի կոլտնտեսությունում՝ 1.154,7 կգ. կաթ, որը լավ երաշխիք է տարեկան պլանի գերակատարման համար։

Մեծ նշանակություն ունեցավ նաև սիլոսի պատրաստումը ամառային արոտներում, որտեղ այն օգտագործվեց ամառվա երկրորդ կեսում, երբ արոտի խոտը զգալիորեն պակասել, չորացել էր և կովերը պակասեցնում էին կաթը։ Ախտայի, Սևանի, Ապարանի, Թալինի, Նոր Բայազետի, Կոտայքի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսություններում անցյալ տարի ամառային արոտներում պատրաստած սիլոսը նպաստեց կովերի կիթը բարձր մակարդակի վրա պահպանելուն և կաթի համախառն արտադրանքի



ավելացմանը։ Օրինակ, Կոտայքի շրջանի Կապուտան գյուղի կոլտնտեսությունն օգոստոսի 10-ից կովերին սկսեց կերցնել ամառային սիլոս։ Արդյունքը եղավ այն, որ փոքր ֆերմայի օրական կաթը ավելացավ 80—85 լիտրով։ Պետք է աշխատել ընթացիկ տարում այս օգտակար միջոցառումը անցկացնել մեր ռեսպուբլիկայի բոլոր ամառային արոտներում. այժմվանից նախապատրաստել հորեր և խրամատներ, առանձնացնել հատուկ հողամասեր օգտակար վայրի բուսականությունը սիլոսացնելու նպատակով։

Արարատյան դաշտավայրի մի շարք կոլտնտեսություններ արդեն անցնում են կովերի մսուրային պահպանմանը ամառային շրջանում։ Այդ կոլտնտեսություններն այժմ կարող են վայրի բուսականությունից, կողտացողուն բույսերից (եղեգնուտ և այլն) պատրաստել սիլոս և այն օգտագործել մինչև եգիպտացորենի սիլոսացումը։ Դրանով լավագույն պայմաններ կստեղծվի կովերի կաթնատվությունը բարձրացնելու համար։

Սիլոսը շատ արժեքավոր կեր է։ Օգտագործենք այս տարվա բարենպաստ պայմանները, պատրաստենք ավելի շատ սիլոս և հանրային անասնաբուծությունը ապահովենք լիառատ կերով։

---

# ՉՐՈՒՅՑ ԲՆԱԿԱՆ ԱՐՈՏՆԵՐՈՒՄ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՀԵՐԹԱՓՈԽ ԱՐԱԾԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Ագրոնոմ Ա. ԴԱՎԹՅԱՆ

Գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի դրական փորձը և գյուղատնտեսական գիտության նվաճումները գործնականում ապացուցել են, որ երբ արոտային ժամանակաշրջանում անասունների արածեցումը կազմակերպվում է հերթափոխ սիստեմով, զգալի չափով բարձրանում է անասունների մթերատվությունը և բարելավվում արոտը։

Մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ, վերջին երկու տարիների ընթացքում, կիրառելով հերթափոխ արածեցման պրակտիկան, զգալի չափով ավելացրին անասունների մթերատվությունը։ Անցյալ տարի Ախտայի, Սևանի, Նոր Բայազետի, Մարտունու, Ապարանի, Սիսիանի, Ղուկասյանի և Ստեփանավանի շրջանների մի շարք կոլտնտեսություններ, կիրառելով արոտների արածեցման հերթափոխ սիստեմը, միջին հաշ-



վով յուրաքանչյուր ֆուրաժային կովից արոտային ժամանակաշրջանում ստացան 200—220 կիլոգրամ ավելի կաթ։ Այդ նույն կոլտնտեսություններում ավելացավ նաև անասնապահությունից ստացվող մյուս տեսակի մթերքների՝ մսի, բրդի արտադրությունը։

Անհրաժեշտ է, որ կոլտնտեսությունների վարչությունները, մասնագետների օգնությամբ, արոտները դասավորեն ըստ անասնատեսակների։ Մթերատու անասուններին՝ կովերին և ընթացիկ տարում ծնված մատղաշներին կարելի է հատկացնել բնակավայրին մոտիկ, հարթ ու բարձր խոտածածկ ունեցող, ջրով ապահովված լավագույն արոտամասերը, իսկ մանր եղջերավոր անասուններին պետք է տրամադրել բարձր լեռնային մանրախոտ բուսականություն ունեցող արոտները։

Արոտներում անասունների տեղաբաշխման ժամանակ նկատի առնել այն հանգամանքը, որ յուրաքանչյուր կովին միջին հաշվով հատկացվի 0,7—0,8 հեկտար բուսածածկ լավագույն արոտամաս, 2—3 տարեկան խոշոր եղջերավորներին՝ 0,5—0,6 հեկտար հողամաս, մինչև 2 տարեկան հասակ ունեցողներին՝ 0,2—0,3 հեկտար, իսկ մանր եղջերավոր անասուններին՝ 0,15—0,20 հեկտար հողամաս։

Ըստ անասնատեսակների և նրանց հասա-
կային խմբերի, առանձնացված արոտամա-
սերը բաժանել 5—6 վանդակների և կազմել
արոտների օգտագործման պլան, արոտային
ամբողջ ժամանակաշրջանի համար։

Արոտների օգտագործման պլանում պետք
է ցույց տրվի, թե յուրաքանչյուր վանդակում
տվյալ տեսակի անասունները քանի՞ օր են
արածելու։ Սովորաբար յուրաքանչյուր վան-
դակ արածեցվում է 5—6 օր, որից հետո ա-
նասուններին պետք է փոխադրել ուրիշ վան-
դակ։

Վանդակային այդ ձևի կիրառմամբ արո-
տամասի բուսածածկը մեկ օգտագործումից
մինչև մյուսը աճում է 12—15 սանտիմետր և
ամենահիմնականը, որ արոտի բուսականու-
թյունը անասունների կողմից օգտագործվում
է ռացիոնալ կերպով, նրանց ոտքերի տակ
չի տրորվում և չի փչանում։

Սիսիանի շրջանի Խրուշչևի անվան կոլտըն-
տեսության առաջավոր անասնապահների
փորձը ցույց տվեց, որ արոտների հերթափոխ
արածեցման միջոցով կովերի կաթնատվու-
թյունը արոտային ժամանակաշրջանում կա-
րելի է ավելացնել 223 կիլոգրամով։

Արոտների հերթափոխ արածեցման ուղ-
ղությամբ ծավալուն աշխատանք են կատա-



րել նաև նույն շրջանի Բազարչայի, Բարիսով-
կայի, Անգեղակոթի, Ստեփանավանի շրջանի
Սարատովկայի, Բլագոդարնոեի, Միխայլով-
կայի, Մեդովկայի կոլտնտեսությունները։

Մեր ռեսպուբլիկան հարուստ է բարձրորակ
բնական արոտներով։ Այժմ, երբ անասնա-
պահական ֆերմաները բարձրացել են ամա-
ռային արոտները, ֆերմաների աշխատողնե-
րի միջոցով անհրաժեշտ է արոտները մաքրել
քարերից, վնասակար բույսերից, թփուտնե-
րից և այլն։

Բարձր լեռնային աղբյուրներից և մթնո-
լորտային տեղումներից առաջացող ջրերը
պետք է առավելագույն չափով օգտագործել
արոտները և մարգագետինները ոռոգելու
համար, որը և հնարավորություն կտա մեծ
չափով բարձրացնելու արոտավայրերի ար-
դյունավետությունը։

Կազմակերպելով բնական արոտներում
անասունների հերթափոխ արածեցում, մեր
ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները հնա-
րավորություն կունենան այս տարի ստանա-
լու այնքան անասնապահական մթերքներ,
որքան նախատեսված են մեր պարտիայի ու
կառավարության որոշումներով։

———

# ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

*Սովետական ժողովուրդը և նրա Զինված Ուժերի ռազմիկները այս տարվա հուլիսի 24-ին հանդիսավոր կերպով տոնելու են ՍՍՌ Միության Ռազմա-Ծովային Նավատորմի օրը, որը մեր երկրի աշխատավորության համար հանդիսանում է տրադիցիոն, համաժողովրդական տոն։*

*Սովետական ժողովուրդը իրավամբ պարծենում է իր նավատորմով, որը հանդիսանում է մեր երկրի Զինված Ուժերի բաղկացուցիչ մասը։ Կոմունիստական պարտիայի կողմից ու նրա ղեկավարությամբ ստեղծված Սովետական Ռազմա-Ծովային Նավատորմը յուրացրեց ռուս նավաստիների դարավոր պանծալի տրադիցիաները և անցնելով փառահեղ մարտական ուղի՝ Հայրենիքի թշնամիների դեմ մղած մարտերում աճեց ու հզորացավ։*

*Ականավոր ծովայիններ Ուշակովի, Լազարևի, Կորնիլովի, Նախիմովի հրամանատարությամբ ռուս խիզախ նավաստիները բազ-*



*մաթիվ անգամ ծովային ճակատամարտերում փայլուն հաղթանակներ են տարել հակառակորդի դեմ և բարձրացրել իրենց Հայրենիքի փառքը։*

*Մեր երկրի ժողովուրդների ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ փայլուն էջեր են գրել նաև ռուս նավաստիները։ 1905 թվականին Սև ծովում «Պոտյոմկին» զրահանավի նավաստիների բարձրացրած զինված ապստամբությունը հանդիսացավ ռևոլյուցիոն ելույթների սկիզբը Ռուսաստանում։ 1917 թվականի Հոկտեմբերյան օրերին «Ավրորա» հածանավը Ձմեռային պալատին ուղղած իր թնդանոթներից կրակած արկերի որոտով հոկտեմբերի 25-ին ամբողջ աշխարհին ազդարարեց մարդկության պատմության նոր դարաշրջանի, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի սկիզբը։ Հավատարիմ մնալով պարտիայի ու բանվոր դասակարգի գործին, Կրոնշտադի ռևոլյուցիոն նավաստիները Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրվանից կարմիր գվարդիականների ու բանակի ռևոլյուցիոն զորամասերի հետ միասին գոտեմարտի դուրս եկան օտարերկրյա զավթիչների ու սպիտակգվարդիականների դեմ և արիաբար պահպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները։*

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի առաջին իսկ օրվանից Կոմունիստական պարտիան ու նրա առաջնորդ Վ. Ի. Լենինը մտահոգվեցին Սովետական Ռազմա-Ծովային Նավատորմի ստեղծման հարցով։ 1918 թվականի հունվարի 28-ին Լենինը ստորագրեց Կարմիր Բանակի ստեղծման մասին դեկրետը, իսկ փետրվարի 14-ին՝ Ռազմա-Ծովային Նավատորմ կազմակերպելու մասին դեկրետը։ Իր գոյության առաջին իսկ օրվանից Սովետական Ռազմական Նավատորմը օգնեց Կարմիր Բանակին՝ ջախջախիչ հարվածներ հասցնելու օտարերկրյա գիշատիչներին ու ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերին, որոնք ձգտում էին խեղդել Սովետական իշխանությունն ու վերականգնել բուրժուա-կալվածատիրական կարգերը։ Թշնամու դեմ մղված մարտերում Ռազմա-Ծովային Նավատորմի հետ միասին Կարմիր Բանակի զորամասերին օգնություն էին ցույց տալիս նաև գետային ու լճային նավատորմիկները։ Ավելի քան 60 հազար ռազմիկ ծովայիններ մարտնչում էին ցամաքային ռազմաճակատներում։ Նրանք ամենուրեք ցույց էին տալիս արիության և խիզախության լավագույն օրինակներ։ Սովետական մարդիկ իրենց սրտերում հավերժ պահում են քաղաքացիական



պատերազմների տարիներին հերոսի մահով զոհված հայրենասեր նավաստիներ Մարկինի, Ժելեզնյակովի և շատ ու շատ ուրիշների հիշատակը։

Օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ու քաղաքացիական պատերազմի ավարտումից հետո մեր երկրի նավատորմը գտնվում էր ծանր, գրեթե կիսաքայքայված վիճակում։ Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը հաշվի առնելով ռազմական նավատորմի մեծ նշանակությունը Սովետական պետության ծովային սահմանների պաշտպանության համար, ձեռք առան բոլոր միջոցները, որպեսզի վերաստեղծեն մեր երկրի Ռազմա-Ծովային Ուժերը, որովհետև այդ էին պահանջում մեր Հայրենիքի շահերը, քանի որ նա հանդիսանում է ծովային մեծ տերություն։ Բավական է ասել, որ Սովետական Միության 60 հազար կիլոմետր սահմաններից ավելի քան 47 հազարը ծովային սահմաններ են։

Կոմունիստական պարտիայի կողմից կիրառվող երկրի ինդուստրացման քաղաքականությունը պայմաններ ստեղծեց նաև լայն կերպով առաջ մղել Ռազմա-Ծովային Նավատորմի զարգացումը։ Նախապատերազմյան հնգամյակների հաջող կատարման շնորհիվ,

որն ապահովեց սոցիալիստական հզոր ին-
դուստրիայի ստեղծումը, մեր երկիրը հնա-
րավորություն ստացավ կառուցել ժամանա-
կակից առաջնակարգ մարտական նավա-
տորմ, նորագույն զենքերով ու սարքավորում-
ներով զինված։ Մեր Հայրենիքի հեռավոր
արևելյան և հյուսիսային սահմանները պահ-
պանելու համար 1932 թվականին ստեղծվեց
Խաղաղ օվկիանոսյան նավատորմը, իսկ 1933
թվականին Հյուսիսային նավատորմը։ Միա-
ժամանակ ամրապնդվեց առափնյա պահպա-
նությունը։ Քանակապես ու որակապես աճեց
ծովային ավիացիան։ Ռազմանավերի վերա-
կանգնման ու կառուցման հետ միասին ծա-
վալվեց նավատորմի հրամանատարական
կադրերի պատրաստումը։

Կոմունիստական պարտիայի կողմից ձեռ-
նարկված միջոցառումների շնորհիվ ՍՍՌՄ
Ռազմա-Ծովային Նավատորմը Հայրենական
Մեծ պատերազմի նախօրյակին դարձավ հզոր
ուժ, ընդունակ լինելով հաջող մարտեր մղել
ուժեղ և նենգ թշնամու դեմ։ Հայրենական
Մեծ պատերազմի ամբողջ ընթացքում Սովե-
տական Միության Ռազմա-Ծովային Նավա-
տորմը եղել է մեր բանակի հավատարիմ օգ-
նականը։ Նավատորմը աչալրջորեն ու հուսա-
լիորեն պահպանում էր ցամաքային զորքերի՝



ծովին հենված թևերը։ Դրա համար էլ հակա-
ռակորդը չկարողացավ սովետական ափերն
իջեցնել ոչ մի դեսանտ։ Անօրինակ սխրագոր-
ծություն ցուցաբերեցին սևծովյան նավաս-
տիները, որոնք ռուսական նավատորմի
փառք՝ Սևաստոպոլ քաղաքի համար մղված
մարտերում սերտորեն համագործակցում էին
զորքերի բոլոր տեսակների հետ։ Թշնամին
Սևաստոպոլի տակ կորցրեց 300 հազար վի-
րավոր և սպանված։

Ստալինգրադի պաշտպանության օրերին
Վոլգայի նավատորմիղը փոխադրել է ավելի
քան 14 հազար տոննա ռազմական բեռ, ա-
վելի քան 2 հազար արկղ արկ ու ական։ Լե-
նինգրադի բլոկադայի ժամանակ Լադոգյան
նավատորմիղը միայն 1941—1942 թվական-
ներին քաղաքի պաշտպաններին ու աշխա-
տավորությանը հասցրել է ավելի քան մեկ
միլիոն տոննա անհրաժեշտ բեռներ։

1944 թվականին Սովետական Զինված Ու-
ժերի կողմից ֆաշիստական զավթիչներին
հասցրած տասը հարվածներից ութին մաս-
նակցել են նավատորմիղներն ու նավատոր-
միկները։

Մեր Հայրենիքը բարձր է գնահատել սովե-
տական նավաստիների մատուցած ծառայու-
թյունը։ Տասնյակ հազարավոր նավաստիներ

պարգևատրվել են Սովետական Միության
շքանշաններով ու մեդալներով։ 513 նավաս-
տիների ու ծովային օդաչուների շնորհվել է
Սովետական Միության Հերոսի կոչում։ Նրան-
ցից 7-ը՝ կրկնակի Հերոսներ են։ Հայրենական
Մեծ պատերազմի տարիներին մեր երկրի
Ռազմա-Ծովային Նավատորմը պատվով կա-
տարեց իր պարտքը սովետական ժողովրդի
հանդեպ և նոր էջեր գրեց ռուսական ծովա-
յինների փառքի տարեգրության մեջ։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթա-
կան ավարտումից հետո Կոմունիստական
պարտիան ու Սովետական կառավարությունը
ինչպես մեր Հայրենիքի մյուս տեսակի զոր-
քերի առջև, այնպես էլ Ռազմա-Ծովային
Նավատորմի առջև խնդիր են դրել՝ զգոն ու ա-
չալուրջ կերպով պահպանել մեր երկրի ան-
վտանգության շահերը, սովետական մարդ-
կանց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը։

Սովետական ժողովուրդը առաջ ընթանա-
լով պարտիայի նշած ուղիով, հաջողությամբ
իրագործելով հինգերորդ հնգամյա պլանը,
արտադրական հաջողություններով ու քաղա-
քական բարձր ակտիվության պայմաններում
է նշում ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատոր-
մի օրը։ Սովետական ժողովուրդը խաղաղա-
սեր ժողովուրդ է, ստեղծագործ ժողովուրդ։



Նա մտահոգված է ամբողջ աշխարհում կա-
յուն ու տևական խաղաղություն ստեղծելու
համար։

Ելնելով սովետական ժողովրդի և բոլոր
աշխատավոր մարդկանց շահերից, Սովետա-
կան կառավարությունն ու Կոմունիստական
պարտիան վարում են խաղաղասիրական քա-
ղաքականություն և ամեն կերպ ձգտում են
մեղմացնել միջազգային լարվածությունը։

Սակայն Ամերիկայի Միացյալ Նահանգնե-
րի ագրեսիվ շրջանները և նրանց արբանյակ-
ները ամեն կերպ ձգտում են խանգարել խա-
ղաղության գործը և մարդկությանը սպառա-
փեցնել նոր պատերազմի սպառնալիքով։ Բա-
վական է հիշել այն փաստը, որ ԱՄՆ-ի բա-
նակը ներկայումս արտասահմանում ունի 950
ռազմական բազա։ Այդ բազաներում ծառա-
յում է 1,5—2 միլիոն մարդ, պահվում են ա-
մերիկյան ավիացիայի մեկ երրորդը և 1.100
ռազմանավ։

Վարելով խաղաղասիրական քաղաքակա-
նություն, Կոմունիստական պարտիան ու Սո-
վետական կառավարությունը միաժամանակ
մեծ ուշադրություն են դարձնում մեր Հայրե-
նիքի ակտիվ պաշտպանությունն ամրապնդե-
լու վրա։

Սովետական Բանակն ու Ռազմա-Ծովային

Նավատորմը հետպատերազմյան տարիներին զինվելով նորագույն և ավելի կատարյալ տեխնիկայով՝ իրենցից է՛լ ավելի հզոր ուժ են ներկայացնում։ Սովետական Բանակում ուսուցումը կազմակերպվում է առաջավոր ռազմական գիտության և Հայրենական Մեծ պատերազմի փորձի հիման վրա, հաշվի առնելով պայքարի նոր միջոցները։

Սովետական նավաստիները իրենց ուսուցումը անցկացնում են դժվարին պայմաններին մոտեցրած իրադրությանը համապատասխան։ Նրանք սովորում են պատերազմ վարել այժմեական ձևով, բարդ պայմաններում հաղթել ուժեղ, տեխնիկապես հագեցված և նենգ թշնամուն։

Սովետական մարդկանց կարևորագույն խնդիրներից մեկն է՝ ուժեղացնել աշխատանքը Բանակին, Նավատորմին և Ավիացիային աջակցող կամավորական ընկերությունում, օգնել երիտասարդությանը սովորելու ռազմական գործը։

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմը անհունորեն նվիրված լինելով իր Հայրենիքին, Կոմունիստական պարտիային ու Սովետական կառավարությանը, աչալուրջ կերպով պահպանում են սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործ աշխատանքն ու մեր Հայրենիքի անվտանգությունը։



# ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Սովետական Միության եղբայրական օգնությամբ 1944 թվականի հուլիսի 22-ին, լեհ ժողովուրդը ազատագրվեց ֆաշիստականստրկությունից։

Իրականացավ լեհ ժողովրդի դարավոր իղձը՝ ազատ ու անկախ երջանիկ կյանք ստեղծելու մասին։ Այսօրվա Լեհաստանը տնտեսապես զարգացած, առաջավոր ժողովրդա-դեմոկրատական պետություն է, սուվերեն և անկախ տերություն, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերի երկիր։

★ Այժմ Լեհաստանը դարձել է խոշոր ինդուստրիալ տերություն, արդյունաբերության արտադրանքի ծավալով նշանավոր տեղ է գրավում Եվրոպայում։ 1953 թվականին Լեհաստանը արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկմամբ Եվրոպայում բռնեց հինգերորդ տեղը, նույնիսկ առաջ անցավ կապիտալիստական Իտալիայից։

★ Յուրաքանչյուր շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի տեսակետից Լեհաստանը միայն 8 տա-

կոսով է ցածր Ֆրանսիայից, այն դեպքում, երբ այդ տարբերությունը 1938 թվականին կազմում էր 4,8 անգամ։ Քարածխի հանույթով Լեհաստանը անցել է Ֆրանսիայից։ 1954 թվականին քարածխի հանույթը Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ավելի շատ էր, քան Ֆրանսիայում, Բելգիայում և Իտալիայում միասին վերցրած։

★ Հաջողությամբ կատարելով երկրի էկոնոմիկայի վերականգնման եռամյա պլանը, լեհ ժողովուրդը 1950 թվականից ձեռնամուխ է եղել սոցիալիզմի շինարարության հիմքը հանդիսացող երկրի ինդուստրացման վեց տարվա պլանի կատարմանը։ Այժմ Լեհաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկան դարձել է ժամանակակից խոշոր ինդուստրիալ երկիր, որտեղ իշխում է սոցիալիստական սեկտորը, որի բաժինը 1953 թվականին կազմում էր արդյունաբերության համախառն արտադրանքի 99 տոկոսը։

★ Նախապատերազմյան 1938 թվականի համեմատությամբ արդյունաբերության արտադրանքը 1953 թվականին ավելացել էր 3,6 անգամ։ Զգալի հաջողությունների է հասել ծանր արդյունաբերությունը։ 1938 թվականի համեմատությամբ, 1953 թվականին 250 տոկոսով շատ պողպատ է ձուլվել, 233 տոկոսով շատ քարածուխ է հանվել, 342 տոկոսով շատ էլեկտրաէներգիա և 192 տոկոսով շատ ցեմենտ է արտադրվել։ Նախապատերազմյան մակարդակը գերազանցել է նաև քիմիական արդյունաբերությունը։



★ Ժողովրդական Լեհաստանում արագ թափով զարգանում է մեքենաշինությունը, որի արտադրանքը (յուրաքանչյուր շնչին) 9 անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Մետաղամշակման հաստոցների արտադրությունը ավելացել է 15 անգամ։ Երկրում ստեղծվել են արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ ծանր հաստոցաշինությունը, ավտոմոբիլային, տրակտորային, նավաշինական, քիմիական արդյունաբերությունը, յուրացված է բարձր որակի պողպատի, առանցքակալների, խոշոր էլեկտրական մեքենաների արտադրությունը։

★ Ծանր արդյունաբերության բազայի վրա լուրջ ուշադրություն է դարձվում թեթև ու սննդի արդյունաբերության զարգացմանը։ Զգալի չափերով աճել է լայն սպառման ապրանքների արտադրությունը։ 1953 թվականին 73 տոկոսով շատ բամբակյա գործվածքեղեն, 87 տոկոսով շատ բրդյա, 196 տոկոսով շատ մետաքսյա գործվածքեղեն է արտադրվել, քան 1938 թվականին։ Շաքարի արտադրությունն այդ տարիներին ավելացել է 118 տոկոսով։

☆ Ժամանակակից տեխնիկայի ներդրման, աշխատանքային մրցակցության լայն ծավալման, բանվորների որակավորման շնորհիվ, աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1953 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, ավելացել է 163 տոկոսով։

★ Ժողովրդա-դեմոկրատական կարգի հաղթանակը

արմատապես բարելավվեց լեհական գյուղացիների վիճակը և ամրացրեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքը։ Հողային ռեֆորմի և արևմտյան հողերի յուրացման հետևանքով գյուղացիությունը ստացավ 6,1 միլիոն հեկտար հող։ 1938 թվականի համեմատությամբ միջին հողաբաժինը ավելացել է 60 տոկոսով, վերացվել է անցյալի ծանր վիճակը— գյուղի հողային սուր քաղցը։

★ Արագ կերպով վերականգնվեց Լեհաստանի գյուղատնտեսությունը, որը մի շարք ցուցանիշներով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ 1953 թվականին յուրաքանչյուր բնակչի համար 30 տոկոսով ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ է արտադրվել, քան 1938 թվականին։

★ Եթե 1949 թվականին Լեհաստանում կար 243 հողագործական արտադրական կոոպերատիվ, ապա 1953 թվականի վերջին այդ թիվը հասել է 8.570-ի, իսկ նրանցում եղած անդամների թիվը 6 հազարից հասել է 200 հազար մարդու։ Այդ արտադրական կոոպերատիվները մշակում են 1,5 միլիոն հեկտար հող, որը կազմում է երկրի մշակվող հողերի 7,4 տոկոսը։ 1952 թվականին արտադրական կոոպերատիվները հացահատիկային կուլտուրաներից 18 տոկոսով ավելի շատ բերք ստացան, քան մենատնտես գյուղացիները։

★ 1953 թվականի վերջին Լեհաստանի գյուղերում գործում էին 400 պետական մեքենա-տրակտորային կայաններ, որոնք ունեին 16.400 տրակտոր (15 ու-



ժանոցի վերածած)։ Լեհաստանի գյուղատնտեսության մեջ նշանակալից տեղ են գրավում պետական տնտեսությունները, որոնք իրենց տրամադրության տակ ունեն երկրի մշակվող հողերի 12,8 տոկոսը։ Սոցիալիստական սեկտորի կողմից մշակվող հողային տարածությունը 1949 թվականի 8,8 տոկոսից 1953 թվականին հասավ ավելի քան 20 տոկոսի։

★ Ժողովրդական իշխանության տարիներին բարելավվել է աշխատավորական լայն մասսաների նյութական բարեկեցությունը։ Ժողովրդա-դեմոկրատական Լեհաստանի ազգային եկամուտը 1953 թվականին 2 անգամ գերազանցել է 1938 թվականի մակարդակը։ 1953 թվականին բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները նախապատերազմյան մակարդակը գերազանցել են մոտ 40 տոկոսով, իսկ գյուղացիների ռեալ եկամուտները ավելացել են 75 տոկոսով։

☆ Ժողովրդական պետությունը լրջորեն հոգ է տանում մայրերի և մանուկների մասին։ Այսպես, 1953 թվականին երեխաների թիվը մանկապարտեզներում 4 անգամ և մանկամսուրներում 90 անգամ շատ է եղել, քան մինչև պատերազմը։ Բնակչության նյութական պայմանների բարելավման շնորհիվ սիստեմատիկաբար պակասում է մահացությունը և աճում է ծնընդաբերությունը։

★ Առաջիկա երկու տարում նախատեսվում է զգալի չափով բարելավել քաղաքի և գյուղի բնակչության նյութական պայմանները։ Նախատեսվում է բանվոր-

ների, ծառայողների և գյուղացիների ռեալ եկամուտների ավելացում 15—20 տոկոսի սահմաններում։

★ Հսկայական աշխատանք է կատարված կուլտուրայի և լուսավորության բնագավառում։ Եթե բուրժուակալվածատիրական Լեհաստանի բնակչության 23,1 տոկոսը անգրագետ էր, ապա այժմ անգրագիտությունը հիմնականում վերացված է։ Բազմաթիվ անգամ ավելացել է տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցների թիվը, հատկապես գյուղում։ Ուժեղ թափով աճել և շարունակում է աճել պրոֆմիութենական և գյուղատնտեսական դպրոցների ցանցը։ Սովորողների մեջ խիստ կերպով ավելացել է բանվորների և գյուղացիների երեխաների թիվը։

★ Նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել բարձրագույն կրթության բնագավառում։ Այժմ Լեհաստանում կա 79 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 120 հազար ուսանողներով։ Եթե 1937—1938 թվականներին բնակչության 10 հազար հոգուն հասնում էր 14 ուսանող, ապա 1952—1953 թվականներին այդ թիվը հասել է 47-ի։ Արմատապես փոխվել է սովորող ուսանողների դասակարգային կազմը։ Ներկայումս սովորողների մեծամասնությունը բանվորների և գյուղացիների զավակներ են։ Բացի այդ, երկու հազար ուսանողներ և երիտասարդ մասնագետներ սովորում են ՍՍՌՄ-ի բարձրագույն ուսումնական հաստատություններում և գիտական հիմնարկներում։

---



# ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱ

Հարավսլավիան գտնվում է Բալկանյան թերակղզու հյուսիս-արևմտյան մասում և ունի մոտավորապես 257 հազար քառակուսի կիլոմետրի հասնող տերիտորիա։ 1953 թվականի մարդահամարի տվյալներով երկրում ապրում է 16.927 հազար մարդ։ Իր տարածությամբ և բնակչության թվով Հարավսլավիան ամենամեծն է բալկանյան բոլոր երկրների մեջ։ Հարավ-արևմուտքում Հարավսլավիայի ափերը ողողում են Ադրիատիկ ծովի ջրերը։ Հարավսլավիան սահմանակից է Հունգարիային, Ռումինիային, Բուլղարիային, Հունաստանին, Ալբանիային, Իտալիային և Ավստրիային։

Հարավսլավիայում բնակվում են հարավսլավոնական ժողովուրդները՝ սերբեր, չերնոգորցիներ, բոսնիացիներ, խորվաթներ, սլավոններ և մակեդոնացիներ, որոնք ցեղակիցներ են միմյանց հետ, ինչպես նաև բոլոր սլավոնական ժողովուրդներին։ Երկրի առանձին շրջաններում ապրում են նաև

հունգարներ, ռումիններ, բուլղարներ, ալբանացիներ, հույներ և թյուրքեր։

Հարավսլավիայի մայրաքաղաքն է Բելգրադը, որն իր արվարձաններով ունի 470 հազար բնակիչ։ Երկրի խոշոր քաղաքներն են՝ Զագրեբը (350 հազար), Լյուբլյանան (138 հազար), Սարաևոն (136 հազար) և Սկոպլեն (122 հազար)։

Հարավսլավիան, որպես Բալկաններում ինքնուրույն պետություն, կազմվեց 1918 թվականի դեկտեմբերի 1-ին՝ առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով Ավստրո-Հունգարիայի անկումից հետո, և այն ժամանակ կոչվեց «Սերբերի, խորվաթների և սլավոնների թագավորություն»։

Հարավսլավիայի կազմի մեջ մտան Սերբիան, Մակեդոնիայի մի մասը, Չերնոգորիան, ինչպես նաև նախկին Ավստրո-Հունգարիայի մասերը՝ Բոսնիան, Հերցոգովինան, Խորվաթիան և Սլավոնիան, Սլովենիան, Դալմատիան և Վոևոդինան։

1929 թվականի հունվարի 9-ին թագավոր Ալեքսանդրը, հենվելով բանակի վրա, պետական հեղաշրջում կատարեց, ցրեց պառլամենտը, դադարեցրեց կոնստիտուցիայի գործողությունը, արգելեց քաղաքական պարտիաները և երկրում հաստատեց ռազ-



մական դիկտատուրա։ Սերբերի, խորվաթների և սլավոնների թագավորությունը վերանվանվեց Հարավսլավիա։

Հարավսլավիան հարուստ է օգտակար հանածոներով։ Պղնձի, արճճի, ցինկի, քրոմի, ծարիրի, սնդիկի և բոքսիտների հանքապաշարներով նա գրավում է առաջին տեղերից մեկը Եվրոպայում։ Հանքավայրերի մեծ մասը կենտրոնացած է Հարավային և Արևելյան Սերբիայում, Վարդարյան Մակեդոնիայում, Բոսնիայում և Սլովենիայում։ Ածխահանքերը ցրված են ամբողջ երկրով մեկ։ Ածխի հանքապաշարների գլխավոր մասը կազմում են մուգ և շագանակագույն քարածուխները։

Հարավսլավիայում կա նաև նավթ։ Նավթահանքերը գտնվում են Խորվաթիայում, Սլովենիայում, Հյուսիս-Արևելյան Բոսնիայում և Բանատում։ Երկաթահանքի գլխավոր պաշարները կենտրոնացած են Բոսնիայում։

Երկրի հսկայական բնական հարստությունները վաղուց ի վեր իրենց վրա էին բևեռել օտարերկրյա իմպերիալիստների հայացքները։ Մի ժամանակ Հարավսլավիայում տեր ու տնօրինողը ֆրանսիական և անգլիական կապիտալիստներն էին, ապա սկսեց իշխել գերմանական կապիտալը, որը

համաշխարհային երկրորդ պատերազմի նախօրյակին իրեն ենթարկեց երկրի էկոնոմիկան և ուժեղացրեց Հարավսլավիայի քաղաքական կախումը Գերմանիայից։

1941 թվականին, ժողովրդական մասսաների ճնշման տակ՝ Հարավսլավիան բարեկամության և չհարձակման պայմանագիր կնքեց Սովետական կառավարության հետ։ Հարավսլավիայի ժողովուրդները ջերմորեն ողջունեցին այդ պայմանագիրը և պատրաստվում էին 1941 թվականի ապրիլի 6-ին հանդիսավոր կերպով նշելու նրա ստորագրումը։ Սակայն ապրիլի 6-ի վաղ առավոտյան ֆաշիստական Գերմանիան հանկարծակի օդային կործանիչ ռմբակոծությամբ ենթարկեց Բելգրադը, դրանով իսկ սկսելով իր ուխտադրուժ հարձակումը Հարավսլավիայի վրա։ Հարավսլավական ժողովուրդը վճռական պայքարի ելավ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։ Երկրում ծավալվեց հզոր պարտիզանական շարժումը, որից ծնունդ առավ Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակը։

Ֆաշիստական օկուպանտները հսկայական վնաս հասցրին երկրի էկոնոմիկային և հատկապես արդյունաբերությանը։ Համարյա թե բոլոր ձեռնարկությունները կամ լուրջ



վնաս ստացան կամ հիմնովին ավերվեցին։ Պատերազմի ավարտումից հետո, հարավսլավյան բանվոր դասակարգը անձնվիրաբար ձեռնամուխ եղավ ժողովրդական սեփականություն դարձած արդյունաբերության վերականգնմանը և հետագա զարգացմանը։ Հարավսլավիայի աշխատավորների հերոսական ջանքերի շնորհիվ, 1946—1954 թվականներին, երկրում կառուցվեց և շահագործման հանձնվեց մոտ 250 նոր ձեռնարկություն, այդ թվում 55 էլեկտրակայան՝ 420 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ, 53 մեքենաշինական գործարան, 23 քիմիական ձեռնարկություն, 7 մետալուրգիական գործարան, երկու կոքսաքիմիական կոմբինատ, 24 էլեկտրասարքավորման ձեռնարկություն, 21 տեքստիլ ֆաբրիկա և այլն։

Վերջին տարիներս բոլոր կապիտալ ներդրումների 60 տոկոսից ավելին հատկացվում էր արդյունաբերությանը, ընդորում տարեցտարի ավելանում էին ծանր արդյունաբերության կապիտալ ներդրումները։ Հետպատերազմյան տարիներին Հարավսլավիայում ստեղծվել են արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են ծանր մեքենաշինությունը, նավթամշակման ու նավթավերամշակման արդյունաբերությունը,

ռադիոտեխնիկական արդյունաբերությունը և այլն։

Նոր ձեռնարկությունների կառուցման և հների վերակառուցման շնորհիվ, զգալիորեն ավելացավ արդյունաբերական արտադրության ծավալը՝ նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ։ Այսպես, 1954 թվականին արդյունաբերական արտադրության ընդհանուր ինդեքսը, 1939 թվականի համեմատությամբ, որի մակարդակը եթե ընդունենք 100, կազմեց 208։ Պլանի համաձայն՝ այս տարի արդյունաբերական արտադրության ինդեքսը հասնելու է 240-ի։

Արդյունաբերությունը դարձել է երկրի ազգային եկամտի կարևորագույն աղբյուրը։ Ազգային եկամտի մեջ արդյունաբերության բաժինը հավասար է 42,1 տոկոսի, գյուղատնտեսությանը՝ 30,3 տոկոսի, առևտրինը և սպասարկումներինը՝ 7,5 տոկոսի, շինարարությանը՝ 7,3 տոկոսի, արհեստագործությանը՝ 4,8 տոկոսի, տրանսպորտինը՝ 4,6 տոկոսի։

Հարավսլավիայի հողա-կլիմայական պայմանները նպաստավոր են հողագործության և անասնապահության զարգացման համար։ Մոտավոր հաշվումներով, հողային հարըս-



տությունները օգտագործվում են հետևյալ կերպ. վարելահողերը կազմում են երկրի ամբողջ տարածության 29,9 տոկոսը, այգիներն ու բանջարանոցները՝ 1,8 տոկոսը, խաղողի այգիները՝ 1,1 տոկոսը, մարգագետինները՝ 7,7 տոկոսը, արոտավայրերը՝ 17,6 տոկոսը, անտառները և թփուտները՝ 32,8 տոկոսը, ոչ պիտանի հողերը՝ 9,1 տոկոսը։

Գյուղատնտեսական կուլտուրաներից առավել տարածված է եգիպտացորենը, որի ցանքատարածությունը կազմում է երկրի ամբողջ ցանքատարածության 40 տոկոսը։ Երկրորդ տեղը գրավում է ցորենը, որն իր ցանքատարածությամբ շատ քիչ է զիջում եգիպտացորենին։ Վարսակ, տարեկան, հնդկացորեն և կորեկ ցանում են գլխավորապես լեռնային շրջաններում։ Վարդարյան Մակեդոնիայում և Դալմատիայում ցանում են բրինձ։

Երկրի ընդհանուր ցանքատարածության մոտ 7 տոկոսը կազմում են տեխնիկական կուլտուրաները, որոնցից ավելի մեծ նշանակություն ունեն կանեփը, վուշը, շաքարի ճակնդեղը և ծխախոտը։ Այդ կուլտուրաների հիմնական շրջաններն են Վոևոդինան, Խորվաթիան և Սլովենիան։ Հերցոգովինայում և

Մակեդոնիայում մշակվում է ծխախոտ, Մակեդոնիայում և Պրիմորյեյում՝ բամբակ։ Երկրում զարգացած է կաթնատնտեսական անասնապահությունը, ինչպես նաև ոչխարաբուծությունը, խոզաբուծությունը և թռչնաբուծությունը։

Հարավսլավոնական ժողովուրդները հարյուրամյակների ընթացքում պայքարել են օտարերկրյա զավթիչների դեմ։ Անկախության համար մղվող այդ պայքարում նրանք մեծ հույսեր են դրել ռուս ժողովրդի օգնության վրա։ Ուստի, հասկանալի է, որ այդ երկու երկրների ժողովուրդները միմյանց հետ կապված են դարավոր եղբայրական բարեկամությամբ և ընդհանուր թշնամիների դեմ մղած համատեղ պայքարով։ Այդ վաղեմի բարեկամությունը և մարտական համագործակցությունը հատկապես ամրապնդվեցին երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, ֆաշիստական զավթիչների դեմ համատեղ մղած պայքարի շրջանում։

Այն դաժան տարիներին սովետական ժողովուրդը խոր համակրանք էր տածում Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող եղբայրական հարավսլավյան ժողովրդի հերոսական պայքարի նկատմամբ,



նրան ցույց տալով բարոյական, իսկ ապա նաև նյութական մեծ օգնություն։ Պատերազմի վերջում, հետապնդելով ֆաշիստական զավթիչներին, սովետական զորքերը եղբայրաբար հանդիպեցին Հարավսլավիայի Ազգային-ազատագրական բանակին և նրա հետ միասին Բելգրադի տակ համատեղ խորտակիչ հարվածներ հասցրին թշնամուն, հարվածներ, որոնք ավարտվեցին Արևելյան Սերբիայի, Վոևոդինայի և Հարավսլավիայի մայրաքաղաք Բելգրադի ազատագրումով։ Այդ մարտերում հարավսլավյան և սովետական ժողովուրդների լավագույն զավակների համատեղ թափած արյունով է՛լ ավելի ամրապնդվեց երկու երկրների եղբայրական ժողովուրդների դարավոր բարեկամությունը։

Սովետական ժողովուրդը ջերմորեն ողջունեց երկրի ազատագրումը և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծումը։ Երկու երկրների ժողովուրդների և պետությունների միջև ստեղծվեցին ամենաբարի հարաբերություններ։ Սակայն այդ բարի հարաբերությունները վերջին տարիներս խախտվեցին և մթագնվեցին ժողովրդի թշնամիների, իմպերիալիզմի արգահատելի գործակալների՝ Բերիայի,

Աբակումովի և այլոց դավաճանական գործունեության հետևանքով։

Վերջին ժամանակներս որոշակի հաջողություններ են ձեռք բերվել երկու պետությունների հարաբերությունները նորմալացնելու գործում։ Այդ են վկայում ՍՍՌՄ և Հարավսլավիայի կառավարական դելեգացիաների միջև 1955 թվականի մայիսի 27-ից մինչև հունիսի 2-ը Հարավսլավիայում տեղի ունեցած բանակցությունների արդյունքները։ Որպես այդ բանակցությունների արդյունք՝ հրապարակված Դեկլարացիան միջազգային մեծ նշանակություն ունեցող մի փաստաթուղթ է։

Բանակցությունների ընթացքում երևան եկավ այն, որ երկու երկրների կառավարություններն էլ անկեղծորեն ցանկանում են է՛լ ավելի զարգացնել համագործակցությունը ՍՍՌՄ-ի և ՀԺԴՌ-ի միջև, որը լիովին համապատասխանում է երկու երկրների շահերին, ինչպես նաև խաղաղության և սոցիալիզմի շահերին։ Դեկլարացիան նախատեսում է մի ամբողջ շարք կարևորագույն միջոցառումներ, որոնք ուղղված են սովետա-հարավսլավական հարաբերությունների լիակատար նորմալացման նպատակին։ Երկու երկրների կառավարություններն էլ միա-



նականություն արտահայտեցին՝ իրենց ապագա հարաբերությունները զարգացնել բարեկամական համագործակցության ոգով։

Նախատեսված են մի շարք կարևոր միջոցառումներ ՍՍՌՄ և Հարավսլավիայի միջև կուլտուրական կապերի ընդլայնման ուղղությամբ. մասնավորապես ենթադրվում է կնքել կուլտուրական համագործակցության կոնվենցիա։ Վերջին ժամանակներս արդեն Հարավսլավիայում եղան սովետական արտիստների և ուսուցիչների դելեգացիաները, իսկ հարավսլավյան արտիստները մի շարք համերգներ տվեցին Սովետական Միությունում՝ Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում։ Հարավսլավիայի էկրաններում ցուցադրըվում են սովետական կինոֆիլմեր։ Մոսկվայի և մի շարք քաղաքների կինո-թատրոններում հաջողությամբ ցուցադրվում են հարավսլավական ֆիլմեր։

Երկու կառավարությունները համաձայնվեցին նաև պահպանել և հեշտացնել համագործակցությունը երկու երկրների հասարակական կազմակերպությունների միջև՝ կոնտակտ հաստատելու, սոցիալիստական փորձի և մտքերի ազատ փոխանակություն կատարելու միջոցով։

Սովետական Միության և ժողովրդական

դեմոկրատիայի երկրների ժողովուրդները, ինչպես նաև հարավսլավական ժողովուրդը, առանձին գոհունակությամբ ընդունեցին բանակցությունների արդյունքները։ Այդ արդյունքներին միահամուռ կերպով հավանություն է տալիս աշխարհի բոլոր երկրներում ամեն ոք, ում համար թանկ է խաղաղության և դեմոկրատիայի գործը։

Բանակցությունների արդյունքները մի նոր վառ էջ բաց արին ՍՍՌՄ և Հարավսլավիայի եղբայրական ժողովուրդների բարեկամական համագործակցության հետագա զարգացման ու ամրապնդման պատմության մեջ։

—



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 23-ին, Հայպետհրատ, 1955։*

Կազմակերպական աշխատանքը գլխավորն է տնտեսության պարտիական ղեկավարման գործում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հունիսի 18-ի համարում։*

*2. ԱՎԵԼԻ ՇԱՏ, ԲԱԶՄԱԶԱՆ ԵՎ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԿԵՐ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆԸ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, էջ 47—65, Հայպետհրատ, 1955։*

Հաջողությամբ անցկացնել խոտհունձը և կերի սիլոսացումը, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի հունիսի 12-ի համարում։*

Մ. Ե. ՕԶՅՈՐՆԻ— Եգիպտացորենի ռեկորդային բերք, *Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրություն, 1955։*

Ավելի շատ կեր հանրային անասնաբուծությանը, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի № 12-ում։*

*3. ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1953 թվականի սեպտեմբերի 3-ին, էջ 53—56, Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում, 1955 թվականի հունվարի 25-ին, էջ 10—27, Հայպետհրատ, 1955։*



Կոմբայնները պատրաստել բերքահավաքին, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 17-ի առաջնորդող հոդվածը։*

Կազմակերպված անցկացնենք հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի առաջնորդողը, տպագրված № 7-ում։*

*4. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԲԱՄԲԱԿԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1953 թվականի սեպտեմբերի 3-ին, էջ 53—65, Հայպետհրատ, 1955։*

Գերազանց մշակենք բամբակի ցանքերը, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 26-ի առաջնորդողը։*

Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի № 7-ում։*

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Առավել ուշադրություն բամբակենու մշակությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 3-ի համարում։*

*5. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔ*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը,

*տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 22-ի համարում։*

Ավելի շատ լավորակ ապրանքներ բնակչության համար, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 15-ի համարում։*

Պլանները կատարել սահմանված ասորտիմենտով, թողարկել բարձրորակ արտադրանք, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 31-ի առաջնորդողը։*

### 6. ՊԱՏՎՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՈՑՄՐՑՈՒԹՅԱՄԲ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 20-ի համարում։*

Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 22-ի համարում։*

Լայն ճանապարհ ռացիոնալիզատորներին, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի հունիսի 10-ի համարում։*

### 7. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ճառ ՍՍՌՄ չորրորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, *Հայպետհրատ, 1955։*



Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 20-ի համարում։*

Առաջավոր փորձի մեծ, ստեղծարար ուժը, *«Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 5-ի առաջնորդողը։*

Արմատավորենք գիտության ու տեխնիկայի նվաճումները և առաջավոր փորձը արտադրության մեջ, *«Ագիտատորի բլոկնոտ»-ի № 12։*

### 8. ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Ռազմական նավատորմի համառուսաստանյան առաջին համագումարում, *1917 թ. նոյեմբերի 22-ին, Երկեր, հատոր 22, էջ 415—423, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին, *Հայպետհրատ, 1950։*

### 9. ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՎԵՏԱ-ՀԱՐԱՎՍԼԱՎԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Հայտարարություն Բելգրադ քաղաքի օդանավակայանում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 28-ի համարում։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունների Դեկլարացիան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 3-ի համարում։*

Հանուն Սովետա-հարավսլավական համագործակցության հետագա ամրապնդման, հանուն ամբողջ աշխարհի կայուն խաղաղության, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 4-ի համարում։*

## *10. ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ՄԻՋԵՎ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ճառ Սովետական Միության և Հնդկաստանի բարեկամությանը նվիրված միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 22-ի համարում։*

Թող ամրապնդվի և ընդլայնվի ՍՍՌՄ-ի ու Հնդկաստանի ժողովուրդների բարեկամությունը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ»-ի 1955 թվականի հունիսի 8-ի համարում։*

Գ. ԿՐԱՅՆՈՎ— Հնդկաստանի ռեսպուբլիկան և նրա քաղաքականությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հունիսի 11-ի համարում։*

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Մ. ՂԱԶԱՐՅԱՆ.— Արևային ջերմոցներ։ Հայպետհրատ, 1955, 30 էջ, տիրաժ 3.000, գինը՝ 30 կոպեկ։*

*Բրոշյուրում հեղինակը կոլտնտեսականներին խելացի խորհուրդներ է տալիս բանջարաբուծության զարգացման գործում արևային ջերմոցները օգտագործելու վերաբերյալ։ Նա մանրամասնորեն բացատրում է, թե ինչպե՞ս պատրաստել ջերմոցային արկղերը, ինչպիսի՞ հող ընտրել ջերմոցների համար, ինչպե՞ս դասավորել արկղերը հողամասում և ի՞նչ ձևով կատարել ցանքը։*

*Ն. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Գաղձի (գայլուկի) բիոլոգիան և պայքարի միջոցառումները։ Հայպետհրատ, 1955, 33 էջ, տիրաժ 3.000, գինը՝ 35 կոպեկ։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու նպատակով բրոշյուրի հեղինակը առանձնակի կարևորություն է տալիս գաղձի դեմ մղվող պայքարին։ Բնութագրելով Հայաստանում հատկապես մեծ տարածում գտած գաղձի հինգ տեսակ-*

ները, հեղինակը միաժամանակ մանրամասնորեն կանգ է առնում նրանց բիոլոգիական հատկանիշների վրա։

Հաջորդ գլուխներում լրիվ պարզաբանում են տրվում, թե ինչ մեծ վնասներ է պատճառում գաղձը մեր կուլտուրական բույսերին, ինչպիսի՞ նախազգուշական և պայքարի ավելի արդյունավետ միջոցներ կիրառել գաղձի տարածումը կանխելու և այն ոչնչացնելու նպատակով։

Ն. ԿԱԶԱՆՑԵՎ.— Կոլտնտեսային իրավունքի հիմունքները։ Հրատարակություն ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության կադրերի պատրաստման գլխավոր վարչության, 1955, 215 էջ, տիրաժ 1.500։

Գիրքը իր մեջ ամփոփում է իրավաբանական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Ն. Դ. Կազանցևի 14 դասախոսությունների սղագրությունը։ Այդ դասախոսություններում սպառիչ պատասխան են ստանում այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսին կոլտնտեսային կյանքի հիմնական օրենքի հարցն է, որի հիման վրա կառուցվել է գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությունը։

Գրքի մի առանձին գլխում խոսվում է այն մասին, թե ինչ ենք հասկանում կոլտնտեսությունների նկատմամբ պարտիական ու պետական ղեկավարության ֆունկցիա ասելով և ինչպես է այն կիրառվում կյանքում։

Գրքում հատուկ բաժին է հատկացված ՄՏԿ-ներին



և նրանց պայմանագրային փոխհարաբերություններին՝ կոլտնտեսությունների հետ։ Այստեղ ընթերցողը պատասխան է ստանում այն հարցերին, թե ինչո՞ւ ՄՏ կայանը հանդիսանում է ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացման վճռական ուժը, ինչո՞ւմն է կայանում նրա գլխավոր խնդիրը, ինչպիսի՞ պարտավորություններ են վերցնում ՄՏ կայանները ու կոլտնտեսությունները իրենց վրա և այլ հարցեր։

Խոսելով կոլտնտեսությունների հողօգտագործման իրավունքների մասին, հեղինակը բացատրում է կոլտնտեսությանն ամրացված հողերի, ջրային ռեսուրսների, անտառների օգտագործման կարգի մասին։ Գրքում լայնորեն մեկնաբանվում են՝ ի՞նչ է կոլտնտեսային սեփականությունը, ի՞նչ նպատակների համար և ո՞ր աղբյուրներից է կազմվում կոլտնտեսության անբաժանելի ֆոնդը, ինչպե՞ս ճիշտ բաշխել կոլտնտեսային եկամուտները, արտադրական բրիգադան ինչո՞ւ է հանդիսանում աշխատանքի կազմակերպման հիմնական ու գլխավոր ձևը և կոլտնտեսություններին ու կոլտնտեսականներին հետաքրքրող բազմաթիվ այլ հարցեր։

### ԴԱՇՏԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱՆ

Հայպետհրատ, 1955, 410 էջ, տիրաժ 5.000, գինը՝ 5 ռուբլի 70 կ.։

Վերջերս լույս տեսած այս ծավալուն աշխատությունը մանրամասն գաղափար է տալիս այն մասին,

թե ի՞նչ բիոլոգիական առանձնահատկություններ ունեն աշնանացան ու գարնանացան ցորենը և տարեկանը, նրանց ո՞ր սորտերն են ավելի կիրառելի, ինչպե՞ս կատարել հացահատիկային կուլտուրաների ցանքի պատրաստումը, ինչպե՞ս կազմակերպել ցանքերի խնամքն ու բերքահավաքը։

Գրքում մի մեծ բաժին է հատկացված հյութալի կերի կայուն բազա հանդիսացող եգիպտացորենին, ուր ամենայն մանրամասնությամբ խոսվում է հացահատիկային մյուս կուլտուրաների համեմատությամբ նրա ունեցած առավելությունների մասին։ Պատասխան է տրվում այն հարցին, թե եգիպտացորենը ցանքաշրջանառության ո՞ր դաշտում պետք է տեղադրել, ինչպիսի՞ պարարտանյութեր, տարվա ո՞ր ժամանակ և ինչպիսի՞ քանակով պիտի մտցնել հողի մեջ։ Ե՞րբ և ինչպե՞ս ցանել ու խնամել եգիպտացորենը։ Միաժամանակ բացատրություն է տրվում եգիպտացորենի հիբրիդային սերմեր ստանալու տեխնիկային, նրան արհեստական փոշոտում տալու դերին ու նշանակությանը։

Աշխատության մյուս գլուխներում քննության են առնվում հնդկացորենի, կարտոֆիլի, հատիկային ընդեղենի (ոսպ, լոբի, սոյա և այլն), կերի արմատապտուղների (ճակնդեղ, գազար, շաղգամ), բամբակի, ծխախոտի միամյա ու բազմամյա խոտաբույսերի աճման, զարգացման ու բերքատվության հետ կապված բոլոր հարցերը։

---

## СОДЕРЖАНИЕ

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### В СТРАНАХ НАРОДНОЙ ДЕМОКРАТИИ



### У КАРТЫ МИРА



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ



### НОВЫЕ КНИГИ




Խմբագիր՝ Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 13 1955 г.

ՎՖ 11698 Պատվեր 610 Տիրաժ 8760

ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։